Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 6 ՄԱՐՏ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.—Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78



# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔ ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ լուծում է կոմունիստական հասարակարգի կառուցման խնդիրները: Մեր երկրում օրավուր գնալով ավելի վառ կերպով է արտահայտվում բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի ստեղծագործական նախաձեռնությունը, որն ուղղված է պետական պլանների կատարմանն ու գերակատարմանը, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծմանը:

Մասսաների աշխատանքային հզոր ակտիվության մեջ իրենց արտահայտությունն են գտնում սովետական մարդկանց հոգևոր նոր կերպարը, նրանց բարոյական բարձր հատկությունները, որ դաստիարակել է կոմունիստական պարտիան: Սոցիալիստական մրցության լենինյան-ստալինյան գաղա-





փարները սովետական հայրենասերներին ոգեշնչում են աշխատանքային նորանոր սխրագործությունների հանուն նվիրական նպատակի իրականացման՝ կոմունիստական հասարակարգի կառուցման։



Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, տապալելով կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը, արթնացրեց և կյանքի կոչեց մեր երկրի ժողովուրդների ստեղծագործական վիթխարի ուժերը, ակտիվ ստեղծագործական գործունեության ասպարեզ բացելով այն միլիոնավոր մարդկանց համար, որոնց ճզմել էր կապիտալիստական ստրկության սիստեմը։

«Մինչև համար հարյուրամյակներ աշխատելուց, շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո,— գրել է Վ. Ի. Լենինը Հոկտեմբերի հաղթանակից անմիջապես հետո,— առաջին անգամն է հնարավորություն ստեղծվում **իր համար աշխատելու**, այն էլ այնպիսի աշխատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի և կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (Երկեր, հատ. 26, էջ 495, Հայպետհրատ)։



Այդ հնարավորությունը ամբողջովին աշխատավորների բարօրության համար, հօգուտ սոցիալիզմի շինարարության օգտագործելու համար՝ հարկավոր էր ստեղծել աշխատանքի նոր, սոցիալիստական կարգապահություն, մասսաների մեջ դաստիարակել կոմունիստական վերաբերմունք դեպի աշխատանքը։ Եթե կապիտալիզմի օրոք կարգապահությունը արտադրության մեջ՝ հարկադրական կարգապահություն է, որը մտցվում է սովամահության և գործազրկության սարսափի տակ, ապա սոցիալիզմի պայմաններում արտադրության մեջ եղած սոցիալիստական կարգապահությունը՝ գիտակցական կարգապահություն է, որը հիմնված է շահագործումից ազատագրված աշխատողների ընկերական համագործակցության և սոցիալիստական փոխադարձ օգնության վրա։

Աշխատանքի նոր, սոցիալիստական կարգապահությունը չէր կարող ծնունդ առնել և զարգանալ՝ առանց դժվարությունների հաղթահարման, առանց վճռական պայքար մղելու հին, բուրժուական հասարակարգից ժառանգած սովորույթների դեմ։ Լենինը մատնանշում էր, որ աշխատանքի նոր կարգապահությունը՝ մարդկանց միջև նոր հա-

րաբերություններ դաստիարակելը՝ «... Հսկայական դժվարությունների հետ կապված, բայց և շնորհակալ մի խնդիր է, որովհետև միայն այն ժամանակ, երբ մենք այն գործնականապես կլուծենք, միայն այն ժամանակ կփակվի կապիտալիստական հասարակության դագաղի վերջին մեխը, որ մենք թաղում ենք» (Երկեր, հատ. 27, էջ 517, Հայպետհրատ)։

Լենինի—Ստալինի պարտիան աշխատավորների մեջ անդուլ կերպով կոփում է նոր, սոցիալիստական կարգապահությունը, բարձրացնում է նրանց գիտակցականությունն ու կազմակերպվածությունը, վճռական պայքար է մղում բուրժուական և մանր-բուրժուական գաղափարախոսության դեմ, հոգատարությամբ պաշտպանում ծիլերը այն ամեն նորի, որ ծնվում է միլիոնավորների նախաձեռնության շնորհիվ։ Այն մեծագույն վերափոխումների հետ միասին, որոնք արմատապես կերպարանափոխեցին մեր երկրի դեմքը, փոխվեցին և աճեցին նաև իրենք՝ սովետական մարդիկ։ Նրանց հոգևոր դեմքի փոփոխումն ամենից առաջ արտահայտվեց այն բանում, որ նոր վերաբերմունք հաստատվեց դեպի աշխատանքը՝ որպես հասարակական կարևորություն ունե-



ցող գործի և որպես քաղաքացիների սրբազան պարտականության՝ Սովետական պետության հանդեպ։

Սոցիալիզմը, որ հաղթել է մեր երկրում, ծնեց մարդկանց նոր հարաբերություններ, արտադրության նոր ձևի կազմակերպում, աշխատանքի նոր կարգապահություն։ Ընկեր Ստալինն ասում է. «Մարդիկ մեզ մոտ ոչ թե շահագործողների համար, ոչ թե պորտաբույծներին հարստացնելու համար են աշխատում, այլ իրենց համար, իրենց դասակարգի համար, իրենց՝ սովետական հասարակության համար, որտեղ իշխանության գլուխ են կանգնած բանվոր դասակարգի լավագույն մարդիկ։ Այդ պատճառով էլ աշխատանքը մեզ մոտ հասարակական նշանակություն ունի, այն պատվի և փառքի գործ է» («Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 499)։

Սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունն այն է, որ նա պատմության մեջ առաջին անգամ չտեսնված բարձրության հասցրեց աշխատավոր մարդուն։ Լինելով իր կյանքի, իր երկրի լիիրավ տերը, նա աշխատում է իր համար, իր հարազատ պետության համար, նրա ուժի մեջ տեսնելով իր ուժը, նրա բարօրության մեջ՝ իր բարօ-

րությունը։ Աշխատանքի նկատմամբ սովետական մարդկանց ունեցած նոր վերաբերմունքը օրենսդրականորեն ամրապնդված է Ստալինյան Կոնստիտուցիայում, որի 12-րդ հոդվածում ասված է. «Աշխատանքը ՍՍՌՄ-ում աշխատանքի ընդունակ յուրաքանչյուր քաղաքացու պարտականությունը և պատվի գործն է՝ համաձայն «ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքի»։ Մեր երկրի յուրաքանչյուր քաղաքացի ունի աշխատանքի իրավունք։ Այդ իրավունքն ապահովվում է ժողովրդական տնտեսության սոցիալիստական կազմակերպմամբ, սովետական հասարակության արտադրողական ուժերի անշեղ աճումով, տնտեսական ճգնաժամերի հնարավորության վերացմամբ և գործազրկության լիկվիդացումով։

Սովետական մարդը հպարտ է այն բանով, որ պատմության մեջ առաջինը ինքը ցույց տվեց, թե ինչպիսի հրաշքներ է գործում շահագործումից ազատագրված աշխատանքը, ինչպես Լենինն էր ասում «իր համար» կատարվող աշխատանքը։ Այդ աշխատանքը ազատ մարդկանց ստեղծագործական աշխատանքն է։ Նա, ինչպես երկինքը երկրից, տարբերվում է կապիտալիստական աշխարհի միլիոնավոր մարդկանց ստրկական աշխա-



տանքից, որոնք ստիպված են ընտրություն կատարել՝ կա՛մ մեռնել սովից, կա՛մ տաղտկալի, ստորացուցիչ, գրոշներով վարձատրվող աշխատանքի մտնել շահագործողի մոտ։ Մեր օրերում, երբ իմպերիալիստական գիշատիչները, պատերազմի պատրաստվելով, ուժեղացնում են հարձակումը աշխատավորների կենսական իրավունքների դեմ, նոր ուժով են հնչում Վ. Ի. Լենինի դեռ 1918 թվականի սկզբներին ասած այն խոսքերը, որ կապիտալիզմի օրոք ժողովուրդը դատապարտված է «չափից դուրս տաղտկալի աշխատանքի, կիսաքաղց կյանքի, ծանր աղքատության, տաժանակրության ու զորանոցի» (Երկեր, հատ. 26, էջ 494, Հայպետհրատ)։

Աշխատանքը մեր երկրում փառքով է պսակված։ Մեզ մոտ, ՍՍՌՄ-ում, ասում է ընկեր Ստալինը, «ամենացանկալի գործը, որը հասարակական հավանության է արժանանում, դառնում է աշխատանքի հերոս լինելու հնարավորությունը, հարվածայնության հերոս լինելու հնարավորությունը, հերոս, որ միլիոնավոր աշխատավորության մեջ շրջապատված է հարգանքի լուսապսակով» (Երկեր, հատ. 12, էջ 354, Հայպետհրատ)։

Սովետական պետությունը բարձր է գնա-

հատում ու խրախուսում ազնիվ աշխատանքը։ Այլ կերպ չի էլ կարող լինել մի հասարակության մեջ, որտեղ արտադրական հարաբերությունները հիմնված են ոչ թե շահագործման ու կոնկուրենցիայի սկզբունքի վրա, այլ՝ ստեղծագործական համագործակցության և սոցիալիստական մրցության սկզբունքի վրա։ Մեզանում լայնորեն կիրառվում է պարգևատրումների ու մրցանակներ տալու սիստեմը՝ տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերած աշխատանքային նվաճումների ու հաջողությունների համար։ Միայն հետպատերազմյան հնգամյակի տարիներին վեց և կես հազար մարդկանց Ստալինյան մրցանակների լաուրեատի կոչում է շնորհվել գիտության, տեխնիկայի, գրականության և արվեստի բնագավառներում կատարած աչքի ընկնող աշխատանքների, գյուտերի ու նվաճումների համար։ Քաղաքի և գյուղի բազմահազար աշխատավորներ արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման, պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով։



Աշխատանքի նկատմամբ սովետական մարդկանց նոր վերաբերմունքը, նոր հա-



յացքները, որ դաստիարակել է Լենինի—Ստալինի պարտիան, իրենց առավել վառ արտահայտությունն են գտել սոցիալիստական մրցության մեջ։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո արդեն Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ «Այժմ, երբ իշխանությյան գլուխ է անցել սոցիալիստական կառավարությունը, մեր խնդիրն է կազմակերպել մրցությունը» (Երկեր, հատ. 26, էջ 494, Հայպետհրատ)։ Սոցիալիստական մրցության մեջ նա տեսնում էր սովետական հասարակության զարգացման անսպառ աղբյուրը։ «Սոցիալիզմը,—ընդգծում էր Վ. Ի. Լենինը,— ոչ միայն չի մարում մրցությունը, այլ, ընդհակառակը, առաջինն է հնարավորություն ստեղծում իրոք լայնորեն կիրառելու այն, իրոք մասսայական չափով, իրոք աշխատավորների մեծամասնությունը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզը, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդները, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուրներ են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Երկեր, հատ. 26, էջ 493, Հայպետհրատ)։

Սոցիալիստական շինարարության պատմությունը մեր երկրում փայլուն կերպով հաստատեց Լենինի խոսքերը։ Սովետական հասարակարգը ազատ արձակեց ժողովրդի ստեղծագործական մեծ ուժերը։ Քաղաքացիական պատերազմի տարիներին կազմակերպված առաջին կոմունիստական շաբաթօրյակները արդեն ցույց տվին, ինչպես գրում էր Լենինը, «բանվորների գիտակցական և կամավոր նախաձեռնությունն աշխատանքի արտադրողականության զարգացման մեջ, նոր աշխատանքային կարգապահության անցնելու, տնտեսության և կյանքի սոցիալիստական պայմաններ ստեղծելու մեջ» (Երկեր, հատ. 29, էջ 519, Հայպետհրատ)։

Բոլշևիկների պարտիայի կատարած վիթխարի կազմակերպական ու դաստիարակչական աշխատանքը աշխատավորների գիտակցության մեջ խորապես արմատավորեց լենինյան-ստալինյան գաղափարները սոցիալիստական մրցության մասին։ Այդ գաղափարները դարձան ժողովրդական ամենալայն մասսաների սեփականությունը։ Ընկեր Ստալինը մրցությունը անվանեց սոցիալիզմի կառուցման կոմունիստական մեթոդ՝ աշ-



խատավորների միլիոնավոր մասսաների առավելագույն ակտիվության հիման վրա։

«Մրցության մեջ ամենանշանավորն այն է,— նշել է ընկեր Ստալինը 1930 թվականին,— որ նա մարդկանց հայացքների մեջ աշխատանքի վերաբերյալ արմատական հեղաշրջում է առաջացնում, որովհետև նա աշխատանքը ամոթաբեր ու ծանր լծից, որպիսին նա համարվում էր առաջներում, դարձնում է **պատվի** գործ, **փառքի** գործ, **արիության** ու **հերոսության** գործ» (Երկեր, հատ. 12, էջ 353, Հայպետհրատ)։

Սոցիալիստական մրցության դրոշը հաղթականորեն ծածանվեց նախապատերազմյան ստալինյան հնգամյակների կառուցումներում։ Միլիոնավոր աշխատավորների ակտիվությունն ու անձնվիրությունը, եռանդն ու նախաձեռնությունը հանդիսացան այն հզոր հիմքերից մեկը, որոնց շնորհիվ մեր երկիրը չտեսնված կարճ ժամանակամիջոցում հետամնաց երկրից դարձավ առաջավոր երկիր, ագրարայինից՝ ինդուստրիալ երկիր։

Սոցիալիստական մրցության մեծ ուժը վառ կերպով ծավալվեց և իր հետագա զարգացումն ստացավ ստախանովյան շարժման մեջ, մի շարժում, որն ընկեր Ստալինը

անվանեց արդիականության ամենակենսական և անպարտելի շարժում։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին սոցիալիստական մրցությունը հանդիսացավ մեր ժողովրդի բոցավառ սովետական հայրենասիրության արտահայտությունը և վիթխարի դեր խաղաց ռազմաճակատին օգնելու համար թիկունքի աշխատավորներին մոբիլիզացնելու գործում։

Սովետական մարդկանց աշխատանքային հերոսությունը նորանոր հիանալի բարիքներ է ստեղծում նաև հետպատերազմյան խաղաղ շինարարության տարիներին։ Սոցիալիստական մրցությունը ներկայումս դարձել է իսկական համաժողովրդական մրցություն։ Մրցությանը մասնակցում է բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների 90 տոկոսից ավելին, ինչպես նաև կոլտնտեսային գյուղացիության ճնշող մեծամասնությունը։

Ոգեշնչված կոմունիստական շինարարության հոյակապ ծրագրով, որ ուրվագծել է ընկեր Ստալինը՝ 1946 թվականի փետրվարի 9-ին ընտրողների առաջ արտասանած պատմական ճառում, սովետական ժողովուրդը ընթանում է հաղթանակից հաղթանակ։ Մեր երկրի աշխատավորները հաջողությամբ կա-



տարեցին հետպատերազմյան հնգամյակը և նշանավոր նվաճումների հասան ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Սովետական ժողովուրդը խանդավառությամբ իրագործում է կոմունիզմի ստալինյան մեծ կառուցումների շինարարությունը Վոլգայի և Դնեպրի, Դոնի և Ամու-Դարյայի վրա, կենսագործում է բնության վերափոխման ստալինյան մեծ պլանը։ Ժողովրդական տնտեսության զարգացման 1951 թվականի պետական պլանի կատարման արդյունքները վառ վկայություն են այն հաջողությունների, որ ձեռք է բերել սովետական ժողովուրդը Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ։ 1951 թվականի համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը արդյունաբերությունն ամբողջությամբ վերցրած կատարեց 103,5 տոկոսով։ Մեր երկրի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 16 տոկոսով։ Սոցիալիստական գյուղատնտեսությունը նոր հաջողություններ ձեռք բերեց հողագործության և անասնապահության զարգացման, կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական ամրապնդման գործում։ Սովետական էկոնոմիկայի հզոր վերել-

քի հիման վրա է՛լ ավելի աճեցին մեր երկրի աշխատավորների բարեկեցությունն ու կուլտուրան։

Սոցիալիստական մրցության միլիոնավոր մասնակիցների ջանքերն ուղղված են պայքարելու սոցիալիստական Հայրենիքի հզորության է՛լ ավելի ամրապնդման համար, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, արտադրանքի որակի բարձրացման ու ինքնարժեքի իջեցման համար։ Աշխատավորների մեծ առաջնորդներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը սովետական մարդկանց սովորեցնում են՝ անընդհատ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ «Աշխատանքի արտադրողականությունը,— գրել է Վ. Ի. Լենինը 1919 թվականին,— վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար» (Երկեր, հատ. 29, էջ 523, Հայպետհրատ)։ «Պայքար գործալքումների դեմ, պայքար աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար հօգուտ մեր արդյունաբերության, հօգուտ ամբողջ բանվոր դասակարգի՝ այս է խնդիրը»,— նշել է ընկեր Ստալինը 1926 թվականին (Երկեր, հատ 8, էջ 155, Հայպետհրատ)։

Ելնելով այդ ցուցումներից, սովետական



ժողովուրդը անդուլ կերպով պայքարել է պայքարում է աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Մեր երկրի բանվորների աշխատանքի արտադրողականությունը հետպատերազմյան հնգամյակում գերազանցեց նախապատերազմյան մակարդակը 37 տոկոսով, իսկ 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 10 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության անընդհատ աճի մեջ իր արտահայտությունն է գտնում սովետական մարդկանց սոցիալիստական բարձր գիտակցականությունը, նրանց աշխատանքային ակտիվությունը։ Մեր ժողովուրդը կենսականորեն շահագրգռված է աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման մեջ։ «Կոմունիզմը,— մատնանշել է Վ. Ի. Լենինը,— կամավոր, գիտակից, միավորված, առաջատար տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է՝ կապիտալիզմի համեմատությամբ» (Երկեր, հատ. 29, էջ 524, Հայպետհրատ)։

Անցած տարին նշանավորվեց սովետական մարդկանց հայրենասիրական բազմաթիվ հիանալի նախաձեռնություններով։ Լյուբլինի ձուլող-մեխանիկական գործարանի խառատ-

ներ Անտոնինա Ժանդարովան և Օլգա Ագաֆոնովան հանդիսացան մրցության նախաձեռնողներ՝ յուրաքանչյուր արտադրական օպերացիա գերազանց կատարելու համար։ Մոսկվայի «Բուրևեստնիկ» կոշիկի գործարանի ստախանովականներ Մարիա Լաչենկոյի և Գրիգորի Մուխանովի նախաձեռնությամբ մրցություն սկսվեց արտադրանքի ինքնարժեքը յուրաքանչյուր արտադրական օպերացիայի ժամանակ իջեցնելու համար։ Ստախանովյան փորձի գանձարանում իրենց արժեքավոր ավանդն են մուծել արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության ուրիշ շատ առաջավորներ։ Օրեց-օր ծավալվում է աշխատանքի ստախանովյան կոլեկտիվ մեթոդների արմատավորման համար, յուրաքանչյուր բրիգադա, աշխատամաս, ցեխ, ձեռնարկություն ստախանովյան դարձնելու համար սկսված շարժումը։

Կոմունիստական շինարարության շահերը պահանջում են, որ այսուհետև էլ ծավալվի ու խորացվի մրցությունը, բազմապատկվեն արտադրության նորարարների շարքերը։

Պարտիան և կառավարությունը մատնանշում են, որ ներկայումս սոցիալիստական մրցության գլխավոր խնդիրները, այն բանի հետ միասին, որ յուրաքանչյուր ցեխ, յուրա-



քանչյուր ձեռնարկություն պարտադիր կերպով կատարի նոմենկլատուրայի և ասորտիմենտի սահմանված պետական պլանը,— այն են, որ պայքար մղվի արտադրանքի որակն ամեն կերպ բարձրացնելու և ինքնարժեքն իջեցնելու համար, հումքն ու նյութերը տնտեսելու, արդյունաբերության և գյուղատնտեսության ներքին ռեզերվները ճիշտ օգտագործելու, նոր տեխնիկան և առաջավոր տեխնոլոգիան արմատավորելու, աշխատանքի արտադրողականությունը և արտադրության կուլտուրան է՛լ ավելի բարձրացնելու համար։

Գյուղում սոցիալիստական մրցությունն ուղղված պետք է լինի պետական պլանների հաջող կատարմանն ու գերակատարմանը, գյուղատնտեսության բնագավառի գլխավոր խնդրի լուծմանը, այն է՝ ամեն կերպ բարձրացնել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը, արագորեն ավելացնել հանրային անասունների գլխաքանակը, միաժամանակ զգալիորեն բարձրացնելով նրանց մթերատվությունը, է՛լ ավելի ամրապնդել ու զարգացնել կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը, լիակատար չափով և բարձր արտադրողականությամբ օգտագործել տեխնիկան, արտադրու-





թյան մեջ արմատավորել գիտության և առաջավոր փորձի նվաճումները։

Մենք պետք է հասնենք այն բանին, որ չլինի ոչ մի հետամնաց ձեռնարկություն, կոլտնտեսություն, սովխոզ, նորակառույց, չլինի ոչ մի բրիգադա, որ չկատարի պլանը, չլինի ոչ մի բանվոր և կոլտնտեսական, որ չկատարի նորմաները։

***

Սոցիալիզմը և աշխատանքը անբաժան են իրարից։ Մեզ մոտ, Սովետական Միությունում, իրականացվում է սոցիալիզմի սկզբունքը՝ «յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակության, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի»։

Յուրաքանչյուր սովետական մարդու բարեխիղճ աշխատանքը՝ ըստ իր ընդունակությունների, կարևորագույն պայմաններից մեկն է աստիճանաբար անցնելու կոմունիստական հասարակարգին, որտեղ աշխատանքը հասարակության յուրաքանչյուր անդամի համար կդառնա կյանքի առաջին պահանջ, որտեղ կենսական բարիքների լիակատար առատության և ժողովրդի աճած գիտակցության հիման վրա կարելի կլինի աստիճանաբար անցնել բաշխմանն ըստ պահանջմունքների։



Այժմ, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում, վճռական նշանակություն է ստանում աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, կապիտալիզմի մնացուկների հաղթահարումը մարդկանց գիտակցության մեջ։ Հայտնի է, որ մեզ մոտ դեռ պատահում են անկարգապահության, աշխատանքի նկատմամբ ոչ սրտացավ վերաբերմունքի դեպքեր առանձին բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների կողմից, ինչպես նաև տեղի են ունենում անտնտեսվարության, սոցիալիստական սեփականության շռայլման ու հափշտակման փաստեր։

Նման փաստերը չեն կարող հանդուրժելի լինել։

«Բանվորներն ու գյուղացիները,— սովորեցնում էր Վ. Ի. Լենինը,— պետք է հասկանան, որ հողերն ու գործարանները նրանց սեփականությունն են, և նրանց հետ վարվեն խնամքով, ինչպես իրենց բարիքի հետ»։ (Երկեր, հատ. 27, էջ 267, Հայպետհրատ)։

«Սոցիալիզմը,— մատնանշում է ընկեր Ստալինը,— պահանջում է ո՛չ թե լոդրություն անել, այլ այն, որ բոլոր մարդիկ աշխատեն ազնվորեն, աշխատեն ո՛չ թե ուրիշների համար, ո՛չ թե հարուստների ու շահագործող-

ների համար, այլ իրենց համար, հասարակության համար» (Երկեր, հատ. 13, էջ 281, Հայպետհրատ)։

Աշխատանքի սոցիալիստական կազմակերպմանը անհամատեղելի են թափթփվածությունը, անբարեխղճությունը, փնթիությունը աշխատանքում։ Առանձին անձանց կողմից աշխատանքի դուրս չգալը կամ ուշանալը, աշխատանքային կարգապահության խախտումը, անորակ արտադրանք տալը՝ լուրջ վնաս են հասցնում մեր արտադրությանը։

Ընկեր Ստալինը 1926 թվականին մատնանշում էր.

«Պետք է բացատրել բանվորներին, մանավանդ նրանց, ովքեր վերջերս են ֆաբրիկաներն ու գործարանները ընդունվել, պետք է բացատրել, որ գործալքումներ թույլ տալով և աշխատանքի արտադրողականությունն առաջ չմղելով, նրանք գործում են ի վնաս ընդհանուր գործի, ի վնաս ամբողջ բանվոր դասակարգի, ի վնաս մեր արդյունաբերության» (Երկեր, հատ. 8, էջ 155, Հայպետհրատ)։

Հսկայական նշանակություն ունի աշխատանքի սոցիալիստական կարգապահության հետագա ամրապնդումը կոլտնտեսություննե-



րում։ Բարեխիղճ վերաբերմունքը դեպի աշխատանքը, ամենօրյա հոգատարությունը կոլտնտեսությունների հանրային տնտեսության ամրապնդման ու ընդլայնման նկատմամբ՝ կոլտնտեսային մասսաների բարեխղճության և կուլտուրայի աճման պարտադիր պայմանն են։ Դեռևս 1933 թվականին, Դնեպրոպետրովսկի մարզի կոլտնտեսականների ընդունելության ժամանակ, ընկեր Ստալինը մատնանշում էր, որ եթե բոլոր կոլտնտեսականները, բոլորը, և ո՛չ թե միայն մեծամասնությունը, ազնվորեն աշխատեն, կոլտնտեսությունները կհեղեղվեն ամեն տեսակի մթերքներով և մեր երկիրը կդառնա աշխարհի ամենահարուստ երկիրը։

Բոլշևիկների պարտիան մասսաների մեջ անդուլ կերպով դաստիարակում է կոմունիստական վերաբերմունք դեպի աշխատանքը և հանրային սեփականությունը, պայքարում է մարդկանց գիտակցության մեջ եղած կապիտալիզմի մնացուկների դեմ, օգտագործելով քննադատության և ինքնաքննադատության փորձված զենքը, հասարակական կարծիքի կրակն ուղղելով այն ամենի դեմ, ինչ ապրել է իր դարը, ինչ խոչընդոտ է հանդիսանում մեր առաջընթացին։ Պարտիան հոգատարությամբ պաշտպանում է այն ամենը, ինչ նոր

է, առաջավոր, ինչ ծնում է մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, ամեն կերպ բազմապատկում և տարածում է սովետական հայրենասերների առաջադիմական նախաձեռնությունները։

Տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառներում ձեռք բերած հաջողությունները ոգևորում ու թևավորում են սովետական մարդկանց, բայց ոչ հանգստացնում։ Աշխատավորների մեծ առաջնորդներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը սովորեցնում են ամեն մի նվաճում դիտել որպես հենարան, սանդուխք՝ պայքարելու նոր հաջողությունների համար։ Անշեղորեն դեպի առաջ, դեպի կոմունիզմի հաղթանակն ընթանալու ոգով բոլշևիկների պարտիայի կողմից դաստիարակված սովետական մարդիկ ուժեղացնում են իրենց պայքարը կոմունիստական շինարարության ստալինյան ծրագրի կատարման համար, Սովետական պետության հզորության է՛լ ավելի ամրապնդման համար։

Խաղաղ ստեղծագործական աշխատանքով զբաղված սովետական ժողովուրդը Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ հաստատակամորեն ու վստահությամբ առաջ է ընթանում դեպի կոմունիզմի հաղթանակը։

Ա. ՇԻՇԿՈՎ

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## ՍՍՌՄ 1952 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

1952 թվականի մարտի 5-ից 8-ը մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի ունեցավ ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ գումարման երրորդ սեսիան, որը քննարկեց և Օրենք ընդունեց ՍՍՌՄ 1952 թվականի Պետական բյուջեի մասին, հաստատեց ՍՍՌՄ 1950 թվականի Պետական բյուջեի կատարման հաշվետվությունը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը՝ նախորդ սեսիայից հետո ընկած ժամանակաշրջանում։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ և երրորդ սեսիաների միջև ընկած ժամանակամիջոցում Սովետական Միության ժողովուրդները սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, կուլտուրայի և աշխատավորության կենսամակարդակի բարձրացման բնագավառներում ձեռք բերեցին հսկայական նվաճումներ։ Հաջողությամբ կատարելով ժողովրդական տըն-

տեսության զարգացման 1951 թվականի պետական պլանը, Սովետական Միության ժողովուրդները բոլշևիկյան պարտիայի, Սովետական կառավարության և հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ մեծագույն նվաճումների հասան կոմունիզմի կառուցման ասպարեզում։

Սովետական Միությունը անսասանորեն գլխավորում է խաղաղության համար մարտնչողների հզոր շարժումը, նա սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության ճակատի անպարտելի ամրոցն է։

Իմպերիալիստական, հակադեմոկրատական և ագրեսիայի ճամբարը ԱՄՆ-ի գլխավորությամբ այդ նույն ժամանակամիջոցում կատարեց ռազմական սանձարձակ շանտաժի և բացահայտ ագրեսիայի մի շարք ակտեր։ ԱՄՆ-ը շարունակում են իրենց խայտառակ ագրեսիան Կորեայում և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի դեմ, հրահրում են նոր համաշխարհային պատերազմ։

Ամեն մի տերության բյուջեն պարզ պատկերացում է տալիս նրա քաղաքականության մասին։

1952 թ. Պետական բյուջեի հատկացումների ծավալը վկայում է մեր երկրում կատարվող խաղաղ, ստեղծագործական աշխա-



տանքի վիթխարի թափի մասին և ցույց է տալիս բոլշևիկյան պարտիայի ու Սովետական կառավարության անսահման հոգատարությունը աշխատավորների նյութական բարեկեցության և Սովետական Միության ժողովուրդների կուլտուրական մակարդակի էլ ավելի բարձրացման ուղղությամբ։ Այն միաժամանակ վառ կերպով արտացոլում է սովետական ժողովրդի խաղաղասիրական անխախտ ձգտումները։

Կոմունիզմի կառուցման գործում սովետական ժողովրդի ձեռք բերած պատմական հաղթանակների մասին են վկայում բյուջետային հատկացումների կատարման թվերը։

ՍՍՌՄ Պետական բյուջեի եկամուտները 1950 թվականին կազմեցին 422,8 միլիարդ ռուբլի, իսկ բյուջետային ծախսերը՝ 413,3 միլիարդ ռուբլի։

ՍՍՌՄ 1951 թվականի Պետական բյուջեն նախնական տվյալների համաձայն կատարված է եկամուտների գծով՝ 468,0 միլիարդ ռուբլով, ծախսերի գծով՝ 441,3 միլիարդ ռուբլով։ Այսպիսով, 1951 թվականին Պետական բյուջեն եկամուտների գծով գերակատարվել է 9,3 միլիարդ ռուբլով։ Բյուջեի եկամուտները 1950 թվականի համեմատու-

թյամբ աճել են 45,2 միլիարդ ռուբլով, կամ 10,7 տոկոսով, իսկ ծախսերը ավելացել են 28,0 միլիարդ ռուբլով կամ 6,8 տոկոսով։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայի կողմից որպես Օրենք ընդունված 1952 թ. Պետական բյուջեի ընդհանուր ծավալը կազմում է եկամուտների գծով՝ 509.911.608 հազար ռուբլի, ծախսերի գծով՝ 476.920.588 հազար ռուբլի, ծախսերի նկատմամբ եկամուտների 32.991.020 հազար ռուբլի գերազանցումով։ Բյուջեի եկամուտների մասը համեմատած անցյալ տարվա հետ ավելացել է 8,7 տոկոսով, ծախսերինը՝ 8,1 տոկոսով։ Ավելի քան 305,0 միլիարդ ռուբլի, այսինքն բյուջեի գերակշռող մասը, 1952 թ. ծախսվելու է ժողովրդական տնտեսության և կուլտուրայի հետագա զարգացման ֆինանսավորման ուղղությամբ, ըստ որում ժողովրդական տնտեսությանը հատկացվում է 180,4 միլիարդ ռուբլի, իսկ սոցիալ-կուլտուրական միջոցառումներին՝ 124,8 միլիարդ ռուբլի։ Ժողովրդական լուսավորությանը հատկացվում է 60 միլիարդ ռուբլի, առողջապահությանը և ֆիզիկական կուլտուրային՝ 22,8 միլիարդ ռուբլի, սոցիալական ապահովությանը և ապահովագրմանը՝ 37,5 միլիարդ ռուբլի, բազմազավակ և միայնակ մայ-



րերին պետական նպաստ՝ 4,5 միլիարդ ռուբլի։ Միաժամանակ մեծ չափերով ավելանում են Միութենական ռեսպուբլիկաների պետական բյուջեները, որոնք 1952 թվականին կկազմեն 98.756.947 միլիարդ ռուբլի։

Միութենական ռեսպուբլիկաների բյուջեներով նախատեսնված միջոցները լիովին ապահովում են ՍՍՌՄ եղբայրական ռեսպուբլիկաների սոցիալիստական էկոնոմիկայի հետագա զարգացումը։

Հայկական ՍՍՌ 1952 թ. պետական բյուջեն հաստատված է 1.273.433 ռուբլու չափով, որը 116 միլիոն ռուբլով կամ 10 տոկոսով ավելի է 1951 թվականի բյուջեից և ապահովում է ռեսպուբլիկայի տնտեսական և կուլտուրական նոր վերելքը։

Սովետական Միությունը անշեղորեն կիրառելով խաղաղության պահպանման և ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդման ստալինյան իմաստուն քաղաքականություն, իր պետական բյուջեի մեծ մասը հատկացնում է խաղաղ շինարարությանը, կոմունիզմի նյութական-տեխնիկական բազայի ստեղծմանն ու ընդլայնմանը։

1952 թ. Պետական բյուջեի հատկացումների ծավալը փայլուն ապացույցն է սովետական ժողովրդի հանճարեղ առաջնորդ

ընկեր Ի. Վ. Ստալինի այն հայտարարությամբ, որը նա 1951 թ. փետրվարին արեց «Պրավդա»-ի թղթակցի հետ ունեցած զրույցում.

«Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա, այսուհետև էլ անսասանորեն կվարի պատերազմը կանխելու և խաղաղությունը պահպանելու քաղաքականություն»։

Կատարելով խաղաղ ստեղծագործ աշխատանք կոմունիստական շինարարության բնագավառում, սովետական ժողովուրդը միաժամանակ աչալուրջ հետևում է ամերիկա-անգլիական իմպերիալիստների ագրեսիվ մեքենայություններին։

«Իհարկե ագրեսորները,— ասում է ընկեր Ստալինը,— ուզում են, որպեսզի Սովետական Միությունը անզեն լինի՝ նրա վրա իրենց հարձակման դեպքում։ Բայց Սովետական Միությունը դրան համաձայն չէ և կարծում է, որ ագրեսորին պետք է դիմավորել լիակատար պատրաստությամբ»։

Պետության պաշտպանության համար հատկացումները ՍՍՌՄ 1952 թ. Պետական բյուջեում կազմում են 113,8 միլիարդ ռուբլի, կամ բյուջեի ամբողջ հատկացումների 23,9 տոկոսը։ Այս հատկացումները հնարա-



վորություն են տալիս անհրաժեշտ միջոցառումներ ձեռնարկել մեր Հայրենիքի անվտանգությունը ապահովելու, երկրի պաշտպանունակությունը ամրապնդելու և սովետական ժողովրդի խաղաղ ստեղծագործ աշխատանքը պաշտպանելու համար։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայի կողմից հաստատված 1952 թվականի Պետական բյուջեն խաղաղության բյուջե է, աշխատավորների բարեկեցության հետագա անշեղ բարձրացման բյուջե, կոմունիզմի կառուցման բյուջե։

Միանգամայն այլ պատկեր են ներկայացնում ԱՄՆ-ի և իմպերիալիստական ագրեսիվ բլոկի մյուս երկրների պետական բյուջեները։

ԱՄՆ-ի բյուջեի ռազմական հատկացումները վերջին տարում եռապատկվել են։ ԱՄՆ-ի ռեակցիոն կառավարողները ներկայումս ռազմական նպատակների համար հատկացնում են ամբողջ պետական բյուջեի ավելի քան 80 տոկոսը։ ԱՄՆ-ի 1951—52 թ.թ. բյուջեում ռազմական հատկացումները կազմում են ավելի քան 50 միլիարդ դոլլար, որը 50 անգամ գերազանցում է ԱՄՆ-ի ռազմական ծախսերը մինչպատերազմյան 1938—39 թ.թ. և համարյա 2 անգամ գերա-

ղանցում է ԱՄՆ-ի պատերազմական ծախսերը 1941—42 բյուջետային տարում։ Այդ նույն ժամանակաշրջանում լուսավորության հատկացված էր բյուջետային ծախսումների միայն մեկ տոկոսը, իսկ առողջապահությանը՝ դրանից էլ քիչ։ Տրումենի պահանջով ԱՄՆ-ում աշխատավորական մասսաներից գանձվող առանց այն էլ խիստ բարձր հարկերը ավելացել են և կազմում են 60 միլիարդ դոլլար, որը եռապատիկ անգամ ավելի է 1943 թ. գանձված հարկերից։

Ռազմական հատկացումների ավելացումը իմպերիալիստական երկրներում կատարվում է ի հաշիվ աշխատավորության հրեշավոր շահագործման։ Ամերիկյան մոնոպոլիստների շահույթները ներկայումս երկու անգամ ավելի են երկրորդ համաշխարհային պատերազմի տարիների շահույթներից և 7 անգամ բարձր են նախապատերազմյան տարիների շահույթներից։ Անգլիայում 1951—52 բյուջետային տարում աշխատավորների աշխատավարձից կատարվող ուղղակի և անուղղակի պահումները կազմում են 50 տոկոսից ավելի։ Նույն վիճակն է տիրում նաև ամերիկյան մոնոպոլիստական իմպերիալիզմի ռազմակառքին լծված մարշալլականացված մյուս երկրներում։ Անգլիայի և Ֆրանսիայի ռազմական ուղղակի ծախսերը 1951 թ. նախորդ տարվա համեմատությամբ ավելացան 2 անգամ։



Միաժամանակ կատաստրոֆիկ չափերով իջնում է աշխատավորության կենսամակարդակը։ Այսպես, 1951 թ. մանրածախ գները Ֆրանսիայում նախապատերազմյանից գերազանցում էին 30 անգամ։

ԱՄՆ-ի և նրա արբանյակների պետական բյուջեները աղքատացման, նոր համաշխարհային պատերազմի հրահրման և ագրեսիայի բյուջեներ են։

ՍՍՌՄ 1952 թ. Պետական բյուջեն Սովետական տերության հզորության մի նոր վառ ապացույցն է։ Այն հաստատ հավատ է ներշնչում ազատության, դեմոկրատիայի և խաղաղության համար պայքարող միլիոնավոր մարդկանց։

Կատարելով ՍՍՌՄ 1952 թ. Պետական բյուջեն, սովետական ժողովուրդը Լենինի—Ստալինի փառապանծ պարտիայի ղեկավարությամբ նորանոր նվաճումներ ձեռք կբերի մեր Հայրենիքում կոմունիզմի կառուցման գործում։

Մ. ԹՈՒԹԽԱՅԱՆ

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ՏԱՐԱԾՈՒՄ ԵՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

*Քաղաքական-մասսայական աշխատանքի հարուստ և ուսանելի փորձ է ձեռք բերել Ալավերդու Պղնձաձուլական գործարանի պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվը։ Գործարանի ցեխերում ագիտացիոն աշխատանք են կատարում 52 ագիտատորներ։ Նրանք բոլորն էլ պարտիական ակտիվի լավագույն ուժերն են՝ արտադրության մեջ աշխատող առաջավոր բանվորներ, տեխնիկներ, ինժեներ-մետալուրգներ։ Արտադրական պլանները քանակական ու որակական բարձր ցուցանիշներով կատարելու նպատակով, ագիտատորները գործի են դրել քաղաքական աշխատանքի բազմազան ձևերն ու մեթոդները. կազմակերպում են զրույցներ, զեկուցումներ, օգնում բանվորներին ավելի լավ աշխատելու, սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունները անթերի կատարելու համար։ Մեր ագիտատորներն ամենուրեք հանդես են գալիս*



*որպես մրցության կազմակերպիչներ, առաջավորների փորձը տարածողներ ու կիրառողներ։*

*Ագիտացիոն-մասսայական աշխատանքը լայնորեն ծավալելու գործում ագիտատորներին ամենօրյա օգնություն ու ղեկավարություն է ցույց տալիս պարտկազմակերպությունը։ Ագիտկոլեկտիվի հավաքներում ագիտատորների համար սիստեմատիկաբար կազմակերպվում են սեմինար պարապմունքներ, հրահանգչական զրույցներ, կոնսուլտացիաներ։*

*Մշտապես գտնվելով պարտիական կազմակերպության ուշադրության կենտրոնում, բարձրացնելով իրենց գաղափարական-տեսական մակարդակը, մեր ագիտատորներն ավելի լայնորեն են ծավալում բոլշևիկյան ագիտացիան բանվորների շրջանում, մոբիլիզացնում նրանց ուժերը բարձր արտադրողականության հասնելու, ընթացիկ տարվա արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար։*

*Պղնձաձուլական գործարանում ագիտացիոն աշխատանք է կատարում ստախանովական վարպետ Հակոբ Մուսինյանը։ Լինելով արտադրության առաջավոր, ագիտատոր Հ. Մուսինյանը իր զրույցներն անց է կաց*

նում հետաքրքիր և գաղափարական բարձր մակարդակով։ Ուշագրավն այն է, որ ամեն անգամ, երբ ներկայանում է հերթական պարապմունքի, ագիտատորն իր առաջ դնում է մի հիմնական խնդիր՝ ագիտացիոն զրույցով բարձրացնել բանվորների աշխատանքային խանդավառությունը և հասնել այն բանին, որ ամբողջ տեղամասի կոլեկտիվը գերակատարի արտադրական պլանները։ Եվ նա հասնում է այդ նպատակին։

«Վատերժակետային» վառարանի բաժանմունքի կոլեկտիվը չէր կատարում արտադրական պլանը։ Այդ մասին սկսեցին լրջորեն մտահոգվել պարտիական կազմակերպությունը և Պղնձաձուլական գործարանի ինժեներա-տեխնիկական անձնակազմը։ Ձեռնարկվեցին անհրաժեշտ միջոցառումներ, հարկ եղավ բարելավել վառարանի տեխնոլոգիան։ Միաժամանակ հատուկ ուշադրություն դարձվեց բանվորների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը ուժեղացնելու վրա։ Այդ նպատակով հրավիրվեց ագիտատորների խորհրդակցություն, որտեղ պարզաբանվեցին նրանց անելիքները «Վատերժակետային» վառարանի բաժանմունքը առաջավորներին հասցնելու համար։

Ագիտատորները սկսեցին ուսումնասիրել



ու տարածել Սովետական Միության առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների և մեր գործարանի մետալուրգների փորձը։ Հմուտ վարպետ, ագիտատոր Հ. Մուսինյանը հանգամանորեն ծանոթացավ Կրասնոուրալսկի ֆլոտացիոն ֆաբրիկայի նորարարներ Ռիբակովայի և Տիրոկովի գործադրած աշխատանքի մեթոդների հետ և այդ մասին հետաքրքիր զրույցներ անցկացրեց բանվորների համար։

— Կրասնոուրալսկի ֆլոտացիոն ֆաբրիկայի այդ անվանի ստախանովականները,— ասաց ագիտատորը,— առաջարկել են սոցիալիստական լայն մրցություն ծավալել հանքաքարից ավելի շատ պղինձ ստանալու, խարամի մեջ պղնձի կորուստը նվազագույնի հասցնելու համար։

Այնուհետև Հ. Մուսինյանը ունկնդիրներին բացատրեց, որ արտադրական պլանի գերակատարումը, երկրին ավելի շատ պղինձ տալը մեծ ավանդ է խաղաղության պահպանման և ամրապնդման գործում, վճռական հարված՝ նոր պատերազմի ամերիկա-անգլիական հրձիգներին։

Զրույցին ակտիվորեն մասնակցեցին ունկնդիրները։

Ինժեներ Վ. Զարապովն առաջարկեց պր-

ղընձաքարն ու կայծքարահողը զատել իրարից և նոր ձուլել։ Այդ եղանակը հեշտացնում է ձուլման պրոցեսը վառարանում։

Ագիտացիոն պարապմունքի ժամին արված Վ. Զարապովի առաջարկի կիրառման շնորհիվ բարելավվեց արտադրության տեխնոլոգիան, բանվորների մեջ ծավալվեց գործարար սոցիալիստական մրցումը։ Այժմ այդ վառարանների արտադրողականությունը զգալի չափով բարձրացել է, և փետրվար ամսվա առաջադրանքը 104 տոկոսով կատարելու համար կոլեկտիվը նվաճել է միջգործարանային փոխանցիկ Կարմիր Դրոշը։

Առաջավոր փորձը ուսումնասիրելու և արմատավորելու ուղղությամբ եռանդուն աշխատանք են կատարում նաև ագիտատորներ Գ. Թամազյանը, Մ. Ալեքսանյանը, Գ. Մանուկյանը, Մ. Տիգրանյանը, Վ. Քոչարյանը և ուրիշներ։

Պղնձաձուլական գործարանում անվանի ձուլողի հռչակ է վայելում կոնվերտորի ցեխի վարպետ, Լենինի շքանշանակիր Հովհաննես Սարգսյանը։ Նա իր ռացիոնալիզատորական առաջարկություններով բարձրացրել է կոնվերտորի արտադրական կարողությունը։ Հ. Սարգսյանը հետևողական կերպով տիրապետում է պղնձի ձուլման ա-



ռաջավոր մեթոդներին և ներկայումս պղընձի ձուլումը կատարում է գերարագ եղանակով, որի շնորհիվ ձուլման յուրաքանչյուր օպերացիայի համար նախատեսված ժամանակը կրճատել է 3—4 ժամով։

Վերջերս ագիտատոր ընկ. Գուրգեն Թամազյանը իր զրույցը նվիրեց Հ. Սարգսյանի աշխատանքի փորձին, որին մասնակից դարձրեց նաև անվանի նորարարին։ Զրույցն անցկացնելիս ագիտատորը առաջին հերթին ձայն տվեց Հ. Սարգսյանին, որին բանվորները լսեցին մեծ հետաքրքրությամբ։ Այնուհետև ագիտատորը իր հերթին պարզաբանեց այդ մեթոդի առավելությունները։ Նա կոնկրետ օրինակներով ու փաստերով ցույց տվեց, որ Պղնձի կոմբինատը Հ. Սարգսյանի աշխատանքի փորձի կենսագործման շնորհիվ տարեկան ստանում է մեկ միլիոն ռուբլու օգուտ։

Ագիտատորները շարունակ իրենց զրույցներում պրոպագանդելով նորարար Հ. Սարգսյանի մեթոդը, արդեն հասել են գործնական արդյունքի։ Այժմ կոնվերտորի բաժանմունքի բոլոր բանվորները անցել են պղնձի գերարագ ձուլման եղանակին և արտադրական պլանները շարունակ գերակատարում

են, տալով բացառապես գերազանց որակի արտադրանք։

Մեր ագիտատորների օգնությամբ Պղնձաձուլական գործարանում լավ է կազմակերպված նաև ցուցադրական ագիտացիան։ Բոլոր ցեխերում լույս են տեսնում իլյիչովկաներ, գործի են դրվել ցուցանիշների տախտակները։ Պղնձաձուլական գործարանի մուտքի մոտ փակցված պլակատներն ու լոզունգները ձուլող բանվորներին կոչ են անում՝ լայնորեն արմատավորել պղնձի գերարագ ձուլման մեթոդը, ավելի շատ պղինձ տալ երկրին, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ինքնարժեքն իջեցնել յուրաքանչյուր արտադրական օպերացիայի ժամանակ և այլն։

Ալավերդու Պղնձաձուլական գործարանի ագիտատորները գլխավորելով ցեխերում ծավալվող ստեղծարար մրցությունը, վեր հանելով և արմատավորելով առաջավորների փորձը, պայքարում են աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում ընդհանուր վերելքի հասնելու, 1952 թվականի պլանը ժամկետից մեկ ամիս շուտ կատարելու համար։

Հ. ՔՈՍՅԱՆ

Ալավերդու Պղնձաձուլական գործարանի ագիտկոլեկտիվի ղեկավար



## ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐԻ ՀԵՏ ՏԱՐՎՈՂ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Աշխատավորների շրջանում քաղաքական-մասսայական աշխատանք կազմակերպելու համար, սկզբնական պարտիական կազմակերպությունները ագիտատորներ են ընտրում կազմակերպության քաղաքականապես առավել պատրաստված անդամների, ինչպես նաև գործնական ու քաղաքական բարձր հատկություններով օժտված անպարտիականների շարքերից։

Ագիտատորների վրա պարտիական կազմակերպությունը դնում է պատասխանատու և շնորհակալ խնդիրներ՝ մասսայական-բացատրական աշխատանքի միջոցով բարձրացնել աշխատավորների սոցիալիստական գիտակցությունը, մոբիլիզացնել նրանց ուժերը կոլեկտիվի առջև դրված խնդիրները արագորեն կատարելու համար։ Այդ դեռ բոլորը չէ. սովետական մարդիկ աշխույժ հետաքրքրություն են հանդես բերում մեր Մեծ

Հայրենիքում և նրա սահմաններից դուրս կատարվող դեպքերի նկատմամբ, ձգտում են ճիշտ հասկանալ և կողմնորոշվել այդ դեպքերի հանդեպ, ցուցադրել իրենց ակտիվ վերաբերմունքը իրենց սոցիալիստական Հայրենիքի նկատմամբ։ Ագիտատորների խնդիրն է միաժամանակ բավարարել աշխատավորների բազմաթիվ հարցերի մասին ունեցած հետաքրքրությունը, ժամանակին տեղյակ պահել նրանց աշխարհում կատարվող իրադարձությունների հետ և այդ ընդհանուր բնույթ կրող դեպքերը կապել իր կոլեկտիվի առջև դրված խնդիրների կատարման համար ունկնդիրների անելիքների հետ։

Պարտիական կազմակերպության ամենօրյա օգնությունից ու ղեկավարությունից է կախված ագիտատորների աշխատանքի հաջողությունը։ Այդ օգնությունն ու ղեկավարությունը պարտիական կազմակերպությունը ցույց է տալիս պարտիական բյուրոյի քարտուղարի կողմից գլխավորվող ագիտկոլեկտիվի միջոցով։

ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն իր «Ստալինգրադի պարտկազմակերպությունում ագիտատորների հետ կատարվող աշխատանքի թերությունների և այդ աշխա-



տանքը բարելավելու միջոցառումների մասին» որոշման մեջ նշել է.

«Պարտիական կազմակերպությունների քարտուղարները պարտավոր են անձամբ ղեկավարել ագիտկոլեկտիվների աշխատանքը, յուրաքանչյուր շաբաթ անցկացնել ագիտատորների խորհրդակցություններ տնտեսական-քաղաքական ընթացիկ խնդիրների, արտադրական պլանների կատարման ընթացքի մասին նրանց ինֆորմացիա տալու համար, հրահանգել ագիտատորներին առաջիկա զրույցների թեմաների վերաբերյալ, այդ նպատակով օգտագործելով որակյալ պրոպագանդիստներին, ուսուցիչներին, գյուղատնտեսության մասնագետներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին»։

Ագիտատորներին ցույց տրվող օգնությունը ամենից առաջ արտահայտվում է այն բանում, որ պարտիական կազմակերպությունը քննարկում ու հաստատում է ագիտատորների աշխատանքի ծրագիրը, ագիտկոլեկտիվի աշխատանքի պլանը և հետևում դրանց կենսագործմանը։

Եթե ագիտատորների աշխատանքի ծրագրում նշվում են աշխատավորության շրջանում առաջիկայում կազմակերպվելիք պարապմունքների թեմաները և ըստ առանձին

թեմաների ագիտացիոն աշխատանքի ձևերը, ապա ագիտկոլեկտիվի պլանը կազմվում է այն հաշվով, որ օգնություն կազմակերպվի ագիտատորներին այդ թեմաները մատչելի ու քաղաքական բարձր հագեցվածությամբ պարզաբանելու, ամենանպատակահարմար եղանակով անցկացնելու համար։

Ասենք թե հաջորդ պարապմունքին ագիտատորները զրույցներ են անցկացնելու աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին։ Ագիտկոլեկտիվի ղեկավարը, իսկ անհրաժեշտության դեպքում հրավիրված պրոպագանդիստը, ագիտատորներին բացատրում է աշխատանքի արտադրողականության բարձրացման բացառիկ մեծ դերը կոմունիզմի կառուցման գործում։ Այնուհետև ագիտատորներին հաղորդում կամ, ավելի լավ կլինի թելադրում է Վ. Ի. Լենինի, Ի. Վ. Ստալինի մտքերը աշխատանքի արտադրողականության բարձրացման նշանակության մասին։ Այդ բոլորից հետո սեմինարավարը նախօրոք կատարած ուսումնասիրության հիման վրա վեր է հանում տվյալ ձեռնարկության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման հնարավորությունները, իր մոտ նշում առաջավոր,



բարձր արտադրողականությամբ աշխատողների օրինակները։

Սեմինարավարի ելույթից հետո, հաջորդ ագիտացիոն պարապմունքի այդ նույն թեման լայն քննարկման է ենթարկվում ագիտատորների կողմից։ Ագիտատորներն իրենց ելույթներում լրացնում են սեմինարավարին, պատմում, թե իրենցից յուրաքանչյուրը ինչպես է նախապատրաստվել զրույցին, ինչ աղբյուրներից է օգտվել, ձեռնարկությունից ինչպիսի տվյալներ ու օրինակներ ունի հավաքած և այլն։ Ագիտատորները ագիտկոլեկտիվի նիստում հաղորդում են, թե իրենք ինչ ձևով են ցանկանում անցկացնել զրույցը ունկնդիրների ուշադրությունը գրավելու, հետաքրքրությունը բորբոքելու, պարապմունքը գործարար մթնոլորտում անցկացնելու համար։

Ագիտկոլեկտիվի հավաքներում բացի սեմինար և կոնսուլտացիոն պարապմունքներից, կազմակերպվում է ագիտացիոն աշխատանքի լավագույն փորձի փոխանակում։ Ագիտացիոն պարապմունքը առավել լավ նախապատրաստված ու հետաքրքիր անցկացրած ագիտատորը հավաքում պատմում է իր աշխատանքի փորձի մասին, գրեթե նույնությամբ կրկնում այն ամենը, ինչ ա-

սել է ինքը և թեմայի քննարկման ժամանակ՝ ունկնդիրները։ Օրինակելի ագիտատորի փորձը քննարկվում է հավաքին մասնակցող ագիտատորների կողմից, վեր են հանվում զրույցի դրական կողմերը, խրախուսվում է այն նորը, որ գործադրել է առաջավոր ագիտատորը։ Ագիտկոլեկտիվի ղեկավարը ամփոփելով հավաքի արդյունքները, մատնանշում է առաջավոր ագիտատորի գործադրած աշխատանքի ուսանելի մեթոդների արմատավորման անհրաժեշտությունը, յուրաքանչյուր պարապմունք գործնական հետևանքների հասցնելու պարտիական կազմակերպության պահանջները։

Ագիտկոլեկտիվի նիստերը, կամ ինչպես հաճախ գործածվում է՝ հավաքները, ագիտացիոն աշխատանքի փորձի փոխանակման տրիբուն լինելուց բացի, հանդիսանում են ագիտատորների քաղաքական ինքնակրթությունը կազմակերպելու, նրանց գաղափարական մտահորիզոնը շարունակաբար լայնացնելու լավագույն միջոց։

Ագիտկոլեկտիվի աշխատանքի պլանում նախատեսվում է կազմակերպել զրույցներ, զեկուցումներ տնտեսական, քաղաքական ընթացիկ խնդիրների, միջազգային իրադար-



ձությունների մասին։ Ագիտկոլեկտիվի համար կազմակերպվող զեկուցումների ու զրույցների միջոցով ագիտատորը պետք է մինչև վերջը յուրացնի այն նորն ու կարևորը, որ կատարվում է մեր երկրում ու նրա սահմաններից դուրս։ Ագիտկոլեկտիվի հավաքներում ագիտատորը պետք է ստանա ոչ միայն իր, այլև ունկնդիրներին հետաքրքրող հարցերի պատասխանները։

Ագիտկոլեկտիվի միջոցով ագիտատորների հետ տարվող աշխատանքի հիմնական խնդիրն է՝ նախ ագիտատորներին, իսկ ագիտատորների միջոցով աշխատավորական լայն մասսաներին ժամանակին տեղյակ պահել պարտիայի ու կառավարության որոշումների, ընկեր Ստալինի ցուցումների հետ, որպեսզի, ինչպես ասում է Ս. Մ. Կիրովը,— պարտիայի որոշումները, ընկեր Ստալինի ցուցումները, նրա ելույթները, ճառերը և զեկուցումները, ամեն օր բեղմնավորեն մեր ամբողջ պրակտիկ և ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը։

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՆԱԽԱՄԱՅԻՍՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

1. 1952 թվականի առաջին կիսամյակի պլանների կատարման ու գերակատարման համար ծավալված նախամայիսյան սոցիալիստական մրցությունը՝ սովետական մարդկանց բոցաշունչ հայրենասիրության վառ արտահայտությունն է։

2. Արտադրական պլանները նյութական և դրամական միջոցների նվազագույն ծախսմամբ գերակատարելը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը նախամայիսյան սոցիալիստական մրցության հիմնական նպատակն են։

3. Արդյունաբերության տեմպերի անընդհատ զարգացումը, բարձրորակ արտադրանքի թողարկումը՝ արդյունաբերության բոլոր աշխատողների տնտեսական-քաղաքական կարևորագույն խնդիրն է։

4. Գարնանացանը սեղմ ժամկետում և ագրոկանոններով անցկացնելը 1952 թվականի կայուն և բարձր բերքը ստանալու լավագույն երաշխիքն է։

5. Արդյունաբերության և գյուղատնտեսության



բոլոր աշխատողների ակտիվ մասնակցությունը նախամայիսյան սոցիալիստական մրցությանը՝ 1952 թվականի պետական պլանները և պետական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու լավագույն երաշխիքն է։

6. Լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ մեքենաները և գործիքները արտադրական լրիվ կարողությամբ օգտագործելու համար։

7. Արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատող նորարարների աշխատանքի փորձի մասսայականացումն ու արմատավորումը նախամայիսյան սոցիալիստական մրցության պարտավորությունների կատարման կարևոր պայմանն է։

8. Ինչպես են կատարվում նախամայիսյան սոցիալիստական մրցության պարտավորությունները մեզ մոտ։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ — «Մրցությունը և աշխատավորների աշխատանքային վերելքը», Երկեր, հատ. 12, էջ 122—126.

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ — Ճառ՝ առաջավոր կոլտնտեսականների Համամիութենական առաջին խորհրդակցությանը: «Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ. էջ 602—612։





«Կոլտնտեսային աշխատավորների մրցությունը» «Ս. Հ.», 1952 թ. մարտի 15-ի առաջնորդողը։

«Սոցիալիստական մրցությունը և ագիտատորների խնդիրները», «Ագիտատորի բլոկնոտ» 1952 թ. № 4։

## 2. ԼԱՅՆՈՐԵՆ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ԵՎ ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

1. Արտադրության նորարարները մեր դարաշրջանի առաջավոր մարդիկ են, նրանք քայլում են կոմունիզմի կառուցողների առաջին շարքերում։

2. Արտադրության նորարարների փորձի մասսայականացումը և արմատավորումը տնտեսական շինարարության տեմպերը բարձրացնելու կարևորագույն միջոցն է։

3. Արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավոր մարդկանց հայրենասիրական նախաձեռնությունների ժամանակին արձագանքելը այդ նախաձեռնությունները կյանքում կիրառելը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, սարքավորումները լրիվ ծանրաբեռնվածությամբ աշխատեցնելու, հումքը խնայողաբար օգտագործելու, գերազանց որակի արտադրանք տալու հիմնական պայմաններն է։

4. Ինչպես է մեր ձեռնարկությունում, կոլտնտեսությունում, սովխոզում, ՄՏ կայանում մասսայականացվում ու արմատավորվում նորարարների փորձը։



### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությանը»: «Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 602—617, Հայպետհրատ.։

«Լայնորեն արմատավորել գիտության նվաճումները և առաջավորների փորձը», «Ս. Հ.» փետրվարի 15-ի առաջնորդողը։

«Բոլշևիկյան պայքար ծավալենք կորուստները կանխելու, հումքը տնտեսելու համար», «Ս. Հ.» փետրվարի 8-ի առաջնորդողը։

«Հայրենիքին տանք ավելի շատ բարձրորակ արտադրանք»: «Ս. Հ.» մարտի 11-ի առաջնորդողը։

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել

Ն. Վ. ԳՈԳՈԼ.— «Ռևիզոր»։ 121 էջ, գինը 6 ռ. 55 կոպ.։

«Մարգարիտներ».— (ՍՍՌՄ ժողովուրդների հեքիաթներ)։ 296 էջ, գինը 10 ռ. 20 կոպ.։

Ս. ԿԱՐԱԳՅՈԶՅԱՆ.— «Բամբակագործություն»: 139 էջ, գինը 2 ռ. 70 կոպ.։

«ԴՏ—54 տրակտորի տեխնիկական խնամքի կանոնները»: 32 էջ, գինը 65 կոպ.։

Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

